1917 № 20—ՄԱՅԻՍԻ 28 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ, ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ



ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արասաքաղեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից
Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։
Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։
Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



*«ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ի այն բաժանորդները, որոնք մինչեւ հիմա չեն վճարել թերթի 1917 թուի բաժանորդագինը, խնդրում ենք մինչեւ յունիսի 1-ն անյապաղ ուղարկել։*

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎ.

ԿԻՐԱԿԻ, ՄԱՅԻՍԻ 28, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԻ 7½-ԻՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆԻ ԴԱՀԼԻՃՈՒՄ ՆՇԱՆԱԿՈՒԱԾ Է ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԸ։

Զբաղմունքի առարկաներն են.

1. Կենտրոնի և ճիւղերի 1916 թ. հաշիւների և մի քանի ճիւղերի 1917 թ. նախահաշիւների քննութիւնն ու հաստատութիւնը.

2. Վերստուգիչ յանձնաժողովի զեկուցումը.

3. Ընտրութիւն՝ հերթով դուրս գնացող Խորհրդի անդամների (պ. Ս. Յարութիւնեանի, իշխ. Մ. Թումանեանի, Տ. Ն. Առստամեանի և Յ. Շահնազարեանի) և հրաժարուող պ. Գ. Տէր-Պետրոսեանի փոխարէն.

4. Վերստուգող յանձնաժողովի 3 անդամների և 2 փոխ-անդամների ընտրութիւն.

5. 1917/18 ուս. տար. դպրոցների մասին զեկուցում.

6. Կովկ. Հ. Բ. Ընկ. ճիւղերի համագումար հրաւիրելու և Ընկ. կանոնադրութեան փոփոխութեան մասին։

7. Ընթացիկ հարցեր։

## Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՌԹԻՒ

Ամենահին և ամենախոշոր ազգային հաստատութիւններից մէկը Կովկասեան Հայոց Բարեգործական Ընկերութիւնն է։

Իւր ծրագրով և մանաւանդ վերջին տարիների իւր գործունէութեամբ այդ Ընկերութիւնը աւելի շուտ կրթական և կուլտուրական է քան թէ զուտ բարեգործական։

Ընկերութիւնը իւր ամենամեծ ուշադրութիւնը միշտ դարձրած է եղել գաւառի, գիւղի վրայ. նա անխախտ ձգտել է ընդառաջ գնալ հայ գիւղացութեան կարիքներին և այդ ուղղութեամբ, ըստ իւր ուժերի, շարունակում է գործել, յայնացնելով իւր աշխատանքները և բարձրացնելով նրանց որակը։

Գիւղացութեան վիճակը միշտ եղել է Ընկերութեան գլխաւոր հոգատարութեան առարկան։

Ամենից շատ զրկուած այդ դասակարգի կարիքներն են՝ լուսաւորութիւն, տնտեսական բարելաւումն ու բժշկա-առողջապահական պայմանների բարեփոխութիւն։

Գիւղացութիւնը խարխափում է խաւարի, տգիտութեան մէջ և այդ հանգամանքը դրդել է Բարեգործական Ընկերութեան Կենտրոնական Խորհրդին և նրա 84 գաւառական ճիւղերին՝ նպաստել գիւղական հայ դպրոցներին և նախաձեռնել նոր դպրոցների բացման։ Ընկերութեան նպաստներով պահուող դպրոցների թիւը հարիւր յիսունից աւել է։ Նոյն նպատակով Ընկերութիւնը բաց է արել և պահում է մի շարք գրադարան-ընթերցարաններ, որոնք արդարացի կերպով համարւում են երկրորդ դպրոց այն բազմաթիւ միդասեան և երկդասեան դպրոցաւարտների համար, որոնք հնարաւորութիւն չունեին շարունակելու իրենց ուսումը և լրացնում են ընթերցանութեամբ։ Այդ գրադարան-ընթերցարանները միաժամանակ բաւականութիւն են տալիս և մնացեալ ընթերցասէր ժողովուրդին։

Ընկերութիւնը ջանքեր է գործ դրել նաև գիւղացութեան տնտեսականին։ Բայց այդ ասպարէզում չի կարողացել գործել սիստեմատիկ կերպով և որոշ ծրագրով. նա օգնութեան է հասել իրա ժողովուրդին ծանր դէպքերում, ինչպէս օրինակ երաշտի կամ մի այլ տեսակ աղէտի դէպքում, երբ որոշ շրջանների հայ ժողովուրդի դրութիւնը ենթարկուել է վտանգի։ Նոյն եղանակով կատարուել է և բժշկական օգնութիւնը. երբ տեղի է ունեցել համաճարակ մի որևիցէ վայրում, Ընկերութիւնը կազմել է և ուղարկել վտանգուած շրջանը բժշկա-սանիտարական խմբեր դեղորայքով և այլ պարագաներով։ Ժողովրդի բժշկական օգնութեան համար Ընկերութիւնն ամեն տարի ուղարկում է գիւղական դպրոցներին փոքրիկ և յաճախ գործածուող դեղորայքով դեղատներ, կցելով առանձին հրահանգ դեղերի գործածութեան եղանակի մասին։ Իսկ պատերազմի տարիների ընթացքում Ընկերութիւնը բացել է մի շարք հիւանդանոցներ՝ մի մասը հիւանդ ու վիրաւոր զինուորների, միւս մասը գաղթականների համար. բացի այս, նա կազմել և ուղարկել է մի քանի շրջիկ բժշկական խմբեր նոյն հայ գաղթականութեան համար։ Սակայն հասկանալի է, որ ad hoc (ի դէպս) կատարած աշխատանքը տնտեսական և բժշկական լուրջ խնդիրների վերաբերեալ չի կարող համարուել բաւարար և այդ աշխատանքին արդիւնաւոր դարձնելու համար անհրաժեշտ է, որ նա կատարուի լաւ մշակուած ծրագրով, և դրա համար պէտք է ունենալ հաստատ աղբիւրներ նիւթական միջոցների։ Աւելին կատարել մինչև օրս դըժուար է եղել թէ հին կառավարութեան խոչընդոտների և թէ նիւթական միջոցների սղութեան պատճառով։

Ռուսաստանի յեղափոխութիւնը դոլորշիացրեց հին, հակաժողովրդական կարգերը։

Հայոց Բարեգործական Ընկերութիւնն էլ, իբրև մի հասարակական հաստատութիւն, ազատուեց առաջուայ կապանքներից, նրա գործունէութեան ճանապարհն էլ մաքրուեց անմիտ չարակամներից և արգելքներից, նա էլ ազատուեց հալածողներից և հին կարգերին յատուկ «հայակերութիւնից»։

Իսկ ինչ վերաբերում է նիւթական միջոցներին, այդ կողմից էլ պէտք է յուսալ, որ Ընկերութեան դրութիւնն այսուհետև պէտք է բարեփոխուի։ Նախ՝ նկատուած է որ ունեոր հասարակութիւնը օգնութեան է հասնում այն կազմակերպութիւններին, որոնք լայն, օգտաւէտ և համակրելի գործունէութիւն են ցոյց տալիս, և երկրորդ՝ այժմեան ազատուած հայ դասակարգի մէջ նկատւում է պարտաճանաչութեան գիտակցութիւն ազգային կարիքների և նրանց ծառայող հաստատութիւնների վերաբերմամբ. ի հարկէ դեռ ոչ բաւարար չափով, բայց պարտաճանաչութիւնը յամենայն դէպս այժմ աւելի է արտայայտւում, քան թէ առաջ։

Ահա թէ ինչու մենք վստահ ենք, որ եթէ Կովկասեան Հայոց Բարեգ. Ընկերութիւնը իւր բազմաթիւ ճիւղերով ներշնչուի նոր հովերով և ընդառաջ գնայ ժողովրդի կուլտուրական ու կրթական կարիքներին նոր տեսակէտներով, եթէ նա ընդարձակի իւր գործունէութեան ծրագիրը, փոփոխութեան ենթարկելով կանոնադրութիւնը, և մեծ թափով ու եռանդով սկսի աշխատել, անպայման կունենայ յաջողութիւն։ Ունեոր անձինք Ընկերութեան օգնութեան կը փութան նիւթական առատ միջոցներով, իսկ ինտելիգենտ անձինք՝ իրենց գիտութեամբ և աշխատանքով. հետևանքը կը լինի իսկական և զգալի օգնութիւն մեր ժողովրդի ծով կարիքներին։

Որպէս զի նոր ծրագիրը ամփոփի իւր մէջ այն բոլորը, ինչ որ կարևոր է մեր ժողովրդի համար և ինչ որ կարող է կատարել Ընկերութիւնը, որպէս զի պարզուի, թէ ինչ է թելադրում և պահանջում մեր իրականութիւնը. վերջապէս, որպէս զի լսուի գաւառի գործիչների և ժողովրդի ներկայացուցիչների ձայնը, անհրաժեշտ է հրաւիրել Ընկերութեան ներկայացուցիչների համագումար։

Այդ համագումարը առաջինը կը լինի Ընկերութեան աւելի քան քառասուն տարուայ գոյութեան ու գործունէութեան ընթացքում. առաջին անգամ Ընկերութեան անդամները, որոնք գործում են ամբողջ Կովկասի զանազան հեռաւոր մասերում, հնարաւորութիւն կը ստանան միմեանց տեսնել, միմեանց հետ մտքերի փոխանակութիւն կատարել այն Ընկերութեան կարիքների մասին, որին նրանք ծառայում են։

Քանիցս անգամ մտադրութիւն է եղել կազմել համագումար, բայց չի յաջողուել շնորհիւ հին կառավարութեան անբարեացակամ վերաբերմունքի և յարուցուած դժուարութիւնների։

Համագումարի քննութեան համար շատ խոշոր հարցեր կան—դպրոցական-կրթականի, գիւղական բանկերի, կօօպերատիւ հիմնարկութիւնների և այլն։

Համագումարը առիթ կը տայ Ընկերութեան գործիչներին շփուել. Նա կը մտցնի որոշ թարմութիւն և կենդանութիւն Ընկերութեան գործունէութեան մէջ, առաջ կը բերի նոր եռանդ և առիթ կը տայ նոր նախաձեռնութիւնների։

Անհրաժեշտ է օգտուել ժամանակից և հրաւիրել համագումարը։

Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

# ԼԻՆԵԼ ՉԸ ԼԻՆԵԼ

Շուտով համաշխարհային պատերազմը իր դաժան և զարհուրելի գոյութեան երեք տարին կը բոլորէ։ Շնչասպառ մարդկութիւնը, օրեր համրող մարդկութիւնը իր անյայտ ու անիմանալի ճակատագրին հարց է տալիս.

—Վե՞րջն է, թէ դարձեալ և դարձեալ տարիներ պիտի գան կոտորածի, սովի, սպառման, այլասերման տարիներ։

Առեղծուած է մնում այս, խեղդող, մղձաւանջային առեղծուած...

Պատասխան գտնել չէ կարելի։ Պատասխանների բոլոր հնարաւորութիւններն սպառուել են։ Մարդը չէ կարողանում մի ճար գտնել։ Մարդը այսպիսի բան չէ տեսել սկսած այն օրից, երբ նա, իբրև կենդանական տիպ, երևան եկաւ հողի երեսին՝ ապրելու համար։

Լինե՞լ թէ չը լինել։ Այս արիւնոտ հոգն էր շարունակ տանջում նրան։ Լինելն էլ, չը լինելն էլ որոշում է այն յարատև, անողորմ կռիւը, որ կենդանական աշխարհը մղում է գոյութեան համար։

Այսօր լինել չը լինելու հարցը դրուած է ազգերի առջև կամ անյայտանալ գոյութեան կռուի մէջ, կամ տանել արիւնոտ յաղթանակը ինչ գնով էլ լինի։

Եւ երբէք գոյութեան կռիւը չէ եղել այսքան աւերիչ ու քստմնելի, ինչպէս այժմ։ Երբէք և ոչ մի ժամանակ այնքան անկուշտ ու այնքան անյատակ չէ եղել մարդկութեան և մարդկայնութեան սպանդանոցի արիւնոտ, զզուելի փոսը, ինչպէս այժմ։ Ամբողջ ազգեր, ամբողջ աշխարհներ են անյայտանում այդ փոսի մէջ։ Իսկ նրանք, որոնք ոյժ և կարողութիւն ունեին կուլ չը գնալու համար, կռւում են իրար հետ, ամբողջ աշխարհի մարդկութեան հետ այնպիսի անգթութեամբ, որի առջև գունատւում ու ջնջւում է ամեն մի հասկացողութիւն վայրենի գազանների չարութեան և արիւնկզակութեան մասին։

Մարդ-գազանը վաղուց է ապացուցել որ իրան գերազանցել չէ կարող ոչ մի ուրիշ գազան։

Եւ եթէ ներկայ բոլէին գտնուէր մարդկութեան բարի ոգիներից, որ կարողանար հաւանական գուշակութիւն անել երեք տարի տեւող արիւնհեղութիւնների վերջի մասին, կարելի կը լինէ՞ր միթէ ասել թէ այս պատերազմը անհետ կանցնէ մարդկութեան համար։ Ոչ։ Այսպիսի ահաւոր ցնցումներ չեն անցնում առանց խոր հետքեր թողնելու։ Դեռ խաղաղութիւնը գալուց յետոյ էլ պիտի շարունակուեն տակնուվրայութիւնները մարդկային կեանքի մէջ։ Եթէ այսօր, պատերազմի հետևանքով, սկսել են խորտակուել «Աստուծու ողորմութեամբ» հարիւրաւոր միլիոններ կեղեքող բռնակալները, ո՞վ կարող է ասել թէ վաղը, երբ թնդանօթների ձայնը կտրուած կը լինի, ինչ նորանոր մրցութիւններ, գոյութեան կռուի ինչ նորանոր ձևեր չեն փոթորկի արդէն շատ փոթորկուած, շատ տանջուած մարդկային աշխարհը։

Եւ կեանքի, ապրելու հնարաւորութեան հարցը վաղն էլ այսօրուայ պէս ահաւոր կը լինի, միշտ միևնոյն կտրուկ ու ցնցիչ ձևակերպումով։ Լինե՞լ չը լինել։ Ապրե՞լ չապրել։

Ռուսական յեղափոխութիւնը, որ այսօր մեղրալուսնի մէջ է, կարծում է փոփոխել համաշխարհային իրականութիւնը, վերացնելով այդ հարցը ազգերի փոխադարձ յարաբերութիւնների հողից և դարձնելով նրան զուտ դասակարգային։ Կարող կը լինի նա փոխել մարդկութեան ճակատագիրը մի կարճ միջոցում, այդ ցոյց կը տայ ապագան։ Այսօր, չը նայած ռուսական յեղափոխութեան բոլոր ջանքերին, հարցը դեռ տիրապէս իր հին ձևի մէջ է ներկայանում։ Ազգերն են կռւում իրար հետ կամ ճնշւում կռուի դաշտում։ Եւ ազգերն էլ պիտի ցոյց տան թէ ինչպէս են իրագործում իրանց համար ճակատագրական դարձած լինելութեան կամ չըլինելութեան հարցը։

Օրէնքը մէկ է բոլոր դէպքերում, և նա հրամայողաբար ասում է թէ կեանքի պայքարի մէջ, գոյութեան կռուի արիւնոտ դաշտում խորտակուողը, տրորուողը թոյլը պիտի լինի։ Ներկայ համաշխարհային պատերազմն արդէն մի շարք արիւնաթաթաւ դիակներով ապացուցել է այդ օրէնքի անխախտականութիւնը։

Հայերս էլ այդ դիակների շարքումն ենք։ Եւ ի՜նչ։

Գիտենք և երեք տարի է, այս պատերազմի սկզբից, շարունակ հոլովում էինք ճշմարտութիւններ։ Սև բախտի ծանր անիւը մեզ ջարդել է։ Ի՜նչ և ինչ սոսկումներ չէին գալիս մեզ ահռելի սաստկութեամբ ցնցելու և խրատի դասեր տալու։ Երեխաներ չենք, գիտէինք ու միշտ գիտէինք որ գոյութեան կռուից չեն վախենում առնացի ժողովուրդները, նրանք, որոնք գիտեն գործադրել իրանց բոլոր ոյժերը, նրանք, որոնք զինւում են և հրապարակ են հանում իրանց բոլոր հոգեկան և ֆիզիքական կարողութիւնները։

Մենք, այո, ուրիշ խօսք չունէինք այս երեք զարհուրելի տարիների ընթացքում։

Բայց և այնպէս, պիտի այսօր անվերապահօրէն խոստովանենք որ զուր էին մեզ համար, զուր անցան ցնցող, արեան գետերով շեշտուած խրատները, զուր էինք մենք ամենօրեայ կրկնութիւններ անում, միշտ միևնոյնը հոլովում, լացով ու աղաղակով երկինք ու երկիր կանչում։

Զուր էր այս բոլորը։ Խօսքից գործի անցնել չը կարողացանք մենք։ Խորիմաստ կարողութիւնները մեզ միանգամայն մատչելի են։ Անմատչելի մնում է մեզ միայն իրական գործը, մեր բոլոր ցեղային արժէքները մի տեղ գումարելը, նրանց կուռ միացումը, նրանից ինքնապաշտպանութեան իրական զէնք կռելը։

Այսօր էլ ինչպէս առաջ, ինչպէս միշտ։ Անօգնական ենք մեր գործերի մէջ, տառապում ենք մեր անկարողութիւնից։ Երեք տարուայ մեր ցաւերը ամբողջ աշխարհն են լացացրել նոյն իսկ այս անօրինակ գազանային ժամանակներում։ Բայց եթէ այսօր փորձենք մի տեղ խմբել այն բոլոր ջանքերը, ինչ արել ենք մեր գոյութեան կռիւը փոքր ի շատէ նպաստաւոր կերպով յարդարելու համար, կը տեսնենք անկարող ճիգեր միայն, իսկական ստեղծագործող ոյժի բացակայութիւն, մանր-մունր աշխատանքների ցրուածութիւն։ Սոսկալի աղէտները չը կարողացան մեզ միացնել։ Դարերի ալեոր խորքերից եղել ենք գերազանցապէս կենտրոնախոյս մի ժողովուրդ։ Այսօր էլ միևնոյն արիւնն է խօսում մեր մէջ։

Այսպիսի ժողովուրդների համար ահաւոր փորձաքար է մանաւանդ ազատութիւնը։ Բռնակալութեան ժամանակ մեզ պէս ժողովուրդը դեռ կարողանում է փոքր ի շատէ ոյժ քաղել զոհի, նահատակի զգացմունքից։ Բայց երբ նա ընկնում է այնպիսի տեղ, ուր ոչ ոքի զոհ չէ հարկաւոր, ուր ազատութիւնն է տրւում կեանք ստեղծելու, կեանք զարդարելու համար, այնտեղ ահա իր

ամբողջ տկարութեամբ առաջ է գալիս գոյութեան կռուի անընդունակութիւնը։

Ռուսական յեղափոխութիւնը հենց այսպիսի մի դրութիւն ստեղծեց հայ ժողովրդի համար։ Այսօր կարծեօք այլևս գաղտնիք չէ ոչ մի դիտողի համար որ հայերը յետամնաց են այն մեծամեծ շարժումների մէջ, որոնք պիտի նոր ժամանակներ կանեն։ Անուրանալի է այս մանաւանդ եթէ համեմատութեան դնենք մեզ մեր հարևան ազգութիւնների հետ։

Եւ այսօր մեզ համար, աւելի քան մի ուրիշ ժողովրդի համար, աւելի և աւելի սպառնական է դառնում, աւելի և աւելի մռայլ, յուսահատեցուցիչ կերպարանք է ընդունում ամեն կենդանի էակի վրայ կախուած արիւնոտ հարցը—Լինել չը լինել։

Այս բնական է։ Այս մենք կը լուսաբանենք մեր յետագայ յօդուածներում։

ԼԼՕ

# ԹԻՒՐՔԱՀԱՅ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Թիւրքահայ համագումարը բացուեց մայիսի 2-ին։ Համագումարին ներկայ էին 57 պատգամաւորներ, որոնք մեծ մասամբ ներկայացուցիչներ էին զանազան հայրենակցական և ուսուցչական միութիւնների. ժողովին ներկայ էին նաև գաղթականական գործով զբաղուող մարմինների ներկայացուցիչներ։

Բացման առիթով եղան ողջոյնի ճառեր. կարդացուեց Վեհափառի կոնդակը. Հ. Կ. Կոմիտէի և Կ. Հ. Բ. Ը-թեան կողմից արտասանուեց հետևեալ ողջոյնի խօսքը. «Հ. Բ. Ընկ. և Հ. Կ. Կոմ. և պաշտօնեաները իրենց սրտագին ողջոյնն են ուղղում Թիւրքահայ անդրանիկ համագումարին. այս համագումարը ինքնին ամենափայլուն գրաւականն է Թիւրքահայ ժողովրդի կենսունակութեան և տոկունութեան, որը ենթարկուելով տնտեսական և ֆիզիքական աներևակայելի հարուածների, այսօր հաւաքել է իր ոյժերի մնացորդը, ժառանգելու և տնօրինելու իր հայրենիքի և ժողովրդի բաղդը։ Բ. Ընկ. և Կ. Կոմ. սիրում են հաւատալ, որ համագումարը լիովին կարդարացնէ փախստականների յոյսերը և Թիւրքահայ ժողովուրդը այժմ ազատ լինելով հին ռէժիմի խոչընդոտներից, գործօն մասնակցութիւն կունենայ փախստականական բոլոր գործերում և գոնէ ամենամօտ ապագայում ամբողջ գործը կառնէ իր ուսերի վրայ։ Ի դիմաց Բ. Ընկ. և Կ. Կոմ. ցանկանում ենք համագումարին լիակատար յաջողութիւն և համերաշխ գործունէութիւն»։

Բոլոր ողջունողները շեշտում էին համերաշխութիւնը և համագործակցութիւնը։ Բացման նիստի վերջում ընտրուեց դիւան. ընտրուեցին նախագահներ՝ Լ. Շանթ, Վ. Փափազեան և Ա. Դարբինեան։ Ընտրուեցին նաև հետևեալ յանձնաժողովները՝ 1) Կրթական, 2) Որբանոցային, 3) Կազմակերպչական, 4) Բժ.-սանիտարական, 5) Քաղաքացիական, 6) Վերաշինութեան։

I.— Նախ որբանոցների և դպրոցների կրթական վիճակի մասին զեկուցում տուեց Կրթական Յանձնաժողովը և առաջարկուեց՝ 1) Կազմել դպրոցական ընդհ. ծրագիր, 2) Դպրոցներին կից հիմնել արհեստանոցներ, գիւղատնտեսական դասընթացքներով, 3) Բանալ մանկապարտէզներ, 4) Խիստ լինել ուսուցիչների ընտրութեան գործում, որ նոքա համապատասխանեն իրենց կոչմանը, 5) Ստեղծել ֆոնդ՝ ընդունակ երիտասարդ ուսուցիչների բարձրագոյն կրթութեան համար, 6) Բանալ մանկավարժական դասընթացքներ, 7) Կիրակնօրեայ դպրոցներ, 8) Գրադարան-ընթերցարաններ, 9) Ստեղծել խորհրդին կից դպրոցական կենտրոնական վարչութիւն, որը տանելու է դպրոցական գործերը։

II.— Որբ. սեկցիայի զեկուցումից երևաց, որ այդ գործն էլ զերծ չի եղել խոշոր թերութիւններից և առաջարկուեց՝

1) Աշխատել որբանոցները լիկվիդացիայի ենթարկել, յանձնելով որբերին իրենց ազգականներին՝ բաժանելով տները, տալով նպաստ. անհնար դէպքում որբանոցների պայմանները բարելաւել։ 2) Բանալ փոքր որբերի համար մանկապարտէզներ, 3) Արհեստանոցներ։ 4) Աշխատել որ որբերը մտաւորական ու ֆիզիքական աշխատանք անեն՝ ոյժերը ներածին չափ։ 5) Կառավարչուհիները պէտք է ունենան միջնակարգ կամ բարձր նախակրթարանական ուսումն և տիրապետեն մայրենի լեզուին։ 6) 50-ական որբից պէտք է բաղկացած լինեն որբանոցները։ 7) Ունենալ հիւանդանոց, որբանոցներ և բաղնիք։ 8) Ունենալ կենտրոնական պահեստներ։ 9) Կրթական գործը յանձնել դպրոցական խորհրդին։ 10) Ստեղծել կենտրոնական որբանոցային խորհուրդ, որը մշակելու է ներքին կանոնադրութիւն։ 11) Ունենալ շրջիկ վերատեսուչներ։ 12) Պետական նպաստ 15 ռ. անբաւարար է, պէտք է աշխատել բարձրացնել այն։

III.— Կազմակերպչական սեկցիան ներկայացրեց հետևեալ կանոնադրութիւնը.— Համախմբել Թիւրքահայ մարմինների գործունէութիւնը և համագործակցութիւն ստեղծել Թիւրքահայ և ռուսահայ մարմինների միջև, գաղթականների տնտեսութեան վերականգնման ու հայրենիքի վերաշինութեան աշխատել, կազմակերպել երկրի, Պարսկաստանի և Կովկասի մէջ ապաստանած Թիւրքահայերին. ձեռնարկել տարեկան համագումարներ. ընտրութիւնները պէտք է կատարուեն քառանդամ սիստեմով. իւրաքանչիւր 5000-ը մի պատգամաւոր է տալիս. միայն հեռաւոր շրջաններում թիւը ի նկատի չի առնւում։ Արտակարգ համագումար հրաւիրւում է, եթէ այդ պահանջուի մարմինների կէսի կամ Խորհրդի կէսի կողմից. Խորհուրդը բաղկացած է 25 հոգուց. 15 անդամ, 10 փոխ-անդամ. Խորհուրդն ընտրում է մի Բիւրօ 7 հոգուց բաղկացած, որը վարում է գործերը։

Համագումարն ընտրում է 3 հոգուց մի վերստուգիչ յանձնաժողով. Խորհուրդը հաւաքւում է 2—3 ամիսը մէկ անգամ. Խորհրդի և վերստուգիչի անդամները ռոճիկ չեն ստանում բացի ճանապարհածախսից։ Համահաւասար թուով ռուսահայ և Թիւրքահայ անդամներից բաղկացած Խորհուրդը և Բիւրոն լինելու են կենտր. Մարմինների փախստականական գործերի համար։

IV.— Բժշկա-սանիտարական մասնախմբի զեկուցումից երևաց, որ այդ բաժնում ևս եղել են խոշոր թերութիւններ և առաջարկուեց՝ 1) Ունենալ կաշուի և աչքի հիւանդանոց, 2) Բաղնիքներ, 3) Մանկաբարձուհիներ, 4) Գթութեան քոյրեր պատրաստող կուրսեր, 6) Թռուցիկ խմբեր և բժշկա-սանիտարական խորհուրդ, կից Կենտր. Բիւրոյին։

V.— Քաղաքացիական սեկցիայի զեկուցումից յետոյ, ընդունուեց հետևեալ բանաձևը.— 1) Քաղաքական հիմունքներից անկախ ստեղծել տեղական վարչական մարմիններ երկրի ժողովրդի մասնակցութեամբ, 2) Ժողովրդի գոյութիւնը ապահովել միլիցիայով և ինքնապաշտպանութեամբ։

(Շարունակելի) Ա. Շ.

# ՊԱՏԵՐԱԶՄԻ ՎԱԽՃԱՆԸ

*Հետաքրքրական է քննական աչքով նայել ռուս մամուլի մէջ պատերազմի մասին երևան եկած հոսանքների կարծիքներին և հաւանական եզրակացութիւններ հանել այս անելի սպանդանոցի վախճանի վերաբերմամբ։ Ռուս սոցիալ-դեմոկրատիան, մանաւանդ բոլշեվիկները, քարոզում են, որ զօրքը դադարի կռուելուց, որով պատերազմը կը վերջանայ։ Նրանք, իմ կարծիքով, իրենց գաղափարները վերջնական տրամաբանական եզրակացութեան չեն հասցնում. Նրանք չեն ասում թէ ռուս զօրքը չը կըռուի և թող Գերմանիան շարունակի առաջանալ և տիրել Ռուսաստանին։ Նրանք երաշխաւորութիւն չեն տալիս, որ գերմանական զօրքի մէջ եղած միլիոնաւոր բանուորները նոյնպէս չեն կռւում։ Քանի որ այս երաշխաւորութիւնը չկայ, ուրեմն ոչ մի հիմք չկայ կարծելու թէ գերմանական զօրքերը չեն գայ և չեն տիրի նոր երկրների, եթէ ռուս զօրքերը յետ քաշուեն իրենց դիրքերից։ Նրանք ասում են թէ թող ռուս զօրքը չկռուի, և գերմանացոց զօրքն էլ չի կռուի, բայց չեն պատասխանում թէ ինչ կը լինի, եթէ նրանց անհիմն ենթադրութիւնը սխալ դուրս գայ։ Գերմանացոց զօրքերը ոչ մի քայլ յետ չեն գնում Ռուսաստանից, իսկ արևմուտքում միայն արիւնահեղ կռիւներով նրանց ստիպում են շատ դանդաղօրէն նահանջելու։*

*Պարզ է, որ սոցիալ-դեմոկրատները առաջարկում են խոնարհիլ ուժեղի առաջ։ Գերմանիան այսօր յաղթող է և ուժեղ, նա ոչ մի նշան չի ցոյց տալիս սոցիալ-դեմոկրատների ցանկութիւնը կատարելու, ուրեմն եթէ ռուսները կատարեն նրանց առաջարկութիւնը՝ դուրս կը գայ, որ պահանջւում է, առանց որևէ գրաւականի զիջել զօրեղին, համաշխարհային չարիքներ գործող Գերմանիային։*

*Սոցիալ-դեմոկրատիայի ամբողջ գործունէութիւնը կռիւ էր բռնապետութեան դէմ, ուրեմն ինչպէս են նրանք քարոզում զինադադար մի կողմին, նրա վրայ ճնշում են գործում, հեռացնում են Միլիւկովին, որ իբր թէ դէմ է նրանց նշանաբանին, երբ ոչինչ չեն կարող անել միւս կողմին, աւելի զօրեղի դէմ անկարող են կռուելու և ճնշում գործ դնելու։ Եթէ նրանք ապացուցանէին թէ նրանց ընկերները Գերմանիայում գահընկեց պիտի անեն Վիլհէլմին իր կառավարչական սիստեմով, այն ժամանակ նրանց միակողմանի քարոզը միակողմանի և ի պաշտպանութիւն զօրեղի և նախայարձակողի չէր լինի։*

*Այս քարոզը անիրագործելի և բոլորովին ազատական չէ ըստ էութեան, այլ միակողմանի և յօգուտ բռնապետութեան։ Անիրագործելի և նոյնպէս մարդասիրական չեն ըստ էութեան նրանց քարոզը, թէ հաշտութիւն է պէտք առանց աննեկսիայի և կոնտրիբուցիայի։ Եթէ Գերմանիան յարձակուել է անմեղ Բելգիայի վրայ, կոտորել, քանդել և աւերել է մի ամբողջ քաղաքակրթութիւն՝ յանուն ո՞ր արդարութեան և մարդասիրութեան կարելի է պահանջել, որ մեղաւոր բռնաւորը, քանդողը, աւերողը ոչ մի կոպէկ չը վճարի՝ այդ երկիրը վերակենդանացնելու համար և յանուն ինչ սոցիալիզմի կարելի է ասել, որ անմեղ Հայաստանը պիտի վերադարձնել Թիւրքին, քրիստոնէութեան վերջին քարաշէն յիշատակներն էլ բնաջինջ անելու համար։ Սոցիալ-դեմոկրատները այսպիսի քարոզ պաշտպանելու իրաւունք կունենային, եթէ ասէին, որ նրանց ծրագրած համայնացրած պետական կազմակերպութեան մէջ հերքում են արդարութեան, դատի, իրաւունքի գաղափարները։ Նրանք չեն ասում թէ մարդասպանը, դողը, աւազակը կարող է առանց պատժի կատարել ամեն տեսակ ոճրեր Թոյլի դէմ, բայց ասում են, որ Գերմանիան ոչ մի պատժի չպիտի ենթարկուի, որովհետև մի մարդ չի սպանել, այլ մի քանի միլիոն, մի տուն չի կողոպտել և այրել, այլ միլիոնաւոր տներ։*

*Առանց աննեկսիայի և կոնտրիբուցիայի լոզունգը անիրագործելի է և այն պատճառով, որ ռուս սոցիալ-դեմոկրատիան ոչ մի իրական ոյժ չունի ընդունել տալու այդ լոզունգը ո՛չ դաշնակիցներին և ոչ Գերմանիային։ Ինչպէս կարող է Լենինը իւր համախոհներով ստիպել Անգլիային, որ Բաղդադը յետ տայ և Գերմանիային՝ ռուսական գերմանաբնակ նահանգները։*

*Հաւանական է, որ բոլշեվիկ սոցիալ-դեմոկրատիայի երազական քարոզները կը քայքայեն ռուս զօրքերի դիմադրական ոյժը և Գերմանիան յաղթող կը հանդիսանայ և կամ պատերազմը կը վերջանայ առանց Ռուսաստանի ձայնի։ Գերմանիան փառաւորապէս համաձայնութիւն կը հաստատի Անգլիայի և Ֆրանսիայի հետ, կը զոհի Թիւրքիան, իսկ դաշնակիցները ակամայից պիտի հրաժարուին հաշտութեան վեհաժողովում պաշտպանել Ռուսիային, իսկ Գերմանիան կը տիրէ մի քանի ռուսական նահանգների։ Զայն բարբառոյ յանապատի կը լինի ընկեր Լենինի քարոզը։*

*Սպենսերի կարծիքով այն երկիրներում, ուր սոցիալիզմը առանց բնաշրջման (էվոլիւցիայի) է գործադրւում կամ իրականանում՝ այդտեղ արտաքին թշնամին դիւրաւ է յաղթող հանդիսանում և տեղական չամրացած սոցիալիզմը թղթէ տան պէս քայքայւում է իսկոյն, որպէս Ամերիկայում շատ կուլտուրական Պերուի հին համայնքը չը դիմացաւ մի խումբ սպանացիների արշաւանքին։ Փիլիսոփայի գուշակութիւնը կարող է շատ դիւրութեամբ կատարուել Ռուսաստանի վերաբերմամբ։*

Գ. ԵՆԳԻԲԱՐԵԱՆ

---

# Արտաքին տեսութիւն

## ՄԻՋԱԳԵՏՔԻ ԱՊԱԳԱՆ

*Այն ժամանակից ի վեր, երբ անգլո-հնդիկ զօրախմբերը վերագրաւեցին Միջագետքում գեն. Տաունսենդէի կորցրած հողամասը և գեն. Մոդը ուժեղ յարձակումով գրաւեց Բաղդադ քաղաքն ու համանուն նահանգի մի մասը, անգլիական մամուլն իր սիւնակներից մեծ մասն յատկացնում է Միջագետքի հարցին։ Ինչպէս յայտնի է, անգլիացիների Բաղդադ մտնելուց յետոյ, անգլիական զօրքի հրամանատար գեն. Մոդը մի կոչ բաց թողեց տեղական ազգաբնակութեան, որով յայտարարւում էր, թէ անգլիական կառավարութիւնը վճռած է ազատութիւն տալ արաբներին։ Կասկածից վեր է, որ արաբներն ուրախութեամբ կընդունեն այդ լուրը, որ մի նոր կեանք է բանում բոլոր ժողովուրդներին, զանազան ազգութիւններին ու յարանւանութիւններին, որովհետև Միջագետքի յետագայ տնտեսական զարգացումն այլևս չպիտի արգելքի հանդիպի Թիւրքական բիրտ օրէնքներով, ո՛չ էլ Թիւրքական գարշելի բռնապետութեամբ, որ ծանր կերպով ճնշում էր երկիրը։ Ստացուած տեղեկութիւնների համաձայն, Բաղդադի ազգաբնակութիւնն ովսաննաներով է ընդունել անգլիական զօրախմբերի մուտքը, բարի գալուստ է մաղթել նրանց, որ կարգ հաստատեն և ձերբակալեն քիւրդերին, որոնք իրենց հին սովորութեան համաձայն, կողոպտում էին գիւղերն ու քաղաքը։*

*Այս մասին անգլիական* «Near East» *հանդէսը մի խմբագրական յօդուած է նուիրում «Ապագայ Միջագետքը» խորագրով, ուր գրում է, որ քսան տարուայ ընթացքում Բաղդադի բնա-*

կիչները վկայ են եղել, թէ ինչպէս գերմանացիները պայքար էին մղում Անգլիայի և նրա դաշնակիցների դէմ։ Այդ պատճառով Թիւրքիան պէտք է վռնդուի և ներկայ պատերազմին պատճառ եղող գերմանացիներին ուժեղացնելու մասին թիւրքական խնամատարութիւնը պէտք է միանգամ ընդմիշտ դադարի։

Անհրաժեշտ էր ջախջախել թշնամուն և նրան վանել այդ հողամասերից, բայց անգլիական զօրքերը չեն եկել իբր թշնամի աշխարհակալներ, այլ ազատարարներ։ Մեծն Բրիտանիան գիտէ, թէ եօթ դարուց աւելի ժամանակամիջոցում այս դաւառների արաբները հպատակ են եղել օտարների բռնապետութեան։ Նրանց պալատները քանդուեցին, նրանց այգիներն աւերուեցին, նրանց նախնիներն և իրենք իսկ մեծացան ստրկութեան մէջ։ Իրանց զաւակները քշուած են պատերազմի դաշտը, ոչ թէ իրենց փրկութեան և իրենց հայրենիքի պաշտպանութեան համար, այլ անիրաւ ժարդկանց հրամանով և քմահաճոյքով։ Այս վերջին 4 դարի ընթացքում՝ թիւրքերն եղել են նրանց կեղեքիչները։ Ճիշտ է, որ սրանք խօսել են րէֆորմների մասին, բայց աւերակներն ու աւերածութիւնը վկայում են, որ նրանց խոստումներն օդային են եղել։ Այժմ, երբ թիւրքերը վտարուած են, հարկ չկայ արաբների վրայ նոր օտար իշխանութիւն և օրէնքներ սահմանելու։ Մեծն Բրիտանիան անտարբեր չի կարող մնալ այս երկրի ներկայ և յետագայ անցուդարձերին, այլ, ինչպէս գեն. Մոդն է ասում իր կոչի մէջ, «անգլիական կառավարութիւնը յոյս ունի, որ ձեր փիլիսոփաների և գրողների տենչերը կիրագործուին, և որ Բաղդադի ժողովուրդը դարձեալ կը բարգաւաճի վայելելով բարօրութիւն՝ այնպիսի մի իրաւակարգում, որ համապատասխան լինի նրանց նուիրական օրէնքներին և ցեղային իդէալներին»։

Սրա համար է, որ գեն. Մոդը հրաւիրեց ազգաբնակութիւնը իր երեւելիներով ու ներկայացուցիչներով մասնակցելու իրենց քաղաքային գործերի վարչութեանը՝ գործակցելով անգլիական բանակի հետ եկած Մեծն Բրիտանիայի քաղաքական ներկայացուցիչներին։

Բրիտանական ժողովուրդը հաւատաց թիւրքին, քանի դեռ կարելի էր հաւատալ նրան։ Աբդիւլ-Համիդի հին ռեժիմին երիտասարդ թիւրքերի նոր ռեժիմի փոխարինումն աւելի ներշնչեց այդ հաւատքը. բայց պատերազմի յայտարարութիւնը վերջին կաթիլն եղաւ քաղաքական շրջանակում, և Հայաստանի ու Սիրիոյ կոտորածները լրացրին սոցիալական ու բարոյական շրջանների հիասթափութիւնը։

Անգլիան թիւրքերից դառնում է դէպի արաբները, որոնց ապստամբութիւնը Պոլսի դէմ երկար տարիներում ծրագրուած մի շարժման եզրակացութիւնն եղաւ։ Արաբներն երբէք չկորցրին իրենց ազգային զգացումը թիւրքական կառավարութեան օրով. կրօնական նկատառումները նրանց կապում էին Սուլթանին, և նրանք թերևս օրինապահ մնային, եթէ «Միութիւն և Առաջադիմութիւն» կոմիտէն չփորձէր ցեղերի «թիւրքացման» մեթոդը. այդ ծրագիրն առանձնապէս ուղղուած էր արաբների դէմ։

Բաղդադը, խալիֆաների այդ քաղաքը, այժմ շանս ունի նպաստելու մի շարժման, անգլիական հովանաւորութեան տակ, այն օրուայ համար, երբ Միջագետքը դարձեալ կը դառնայ արաբական մի մեծ կայսրութիւն։

Քաղաքական տեսակէտով Արաբիայի ապագան ընդհանրապէս և Բաղդադի ապագան մասնաւորապէս՝ պէտք է որոշուի յօգուտ արաբների։ Տնտեսական տեսակէտով, անհրաժեշտ միջոցներ պէտք է ձեռք առնել երկրի զարգացման համար։ Անգլիան պէտք է լայն միջամտութիւն ունենայ այս խնդրում, որովհետև Բաղդադը մի ժամանակ աշխարհի հրաշալիքներից մէկն էր, երբ արաբները արտադրեցին իրենց գրականութիւնը, գիտութիւնը, արուեստը։

Միջագետքը, վերջացնում է անգլիական թերթը, իր դիրքը պէտք է վերստանայ աշխարհի մէջ, և, հենց որ զինուորական գործողութիւնները վերջ գտնեն, կսկսուի վերակազմութեան և վերածնունդի աշխատանքը. բայց արաբ ժողովուրդը չպէտք է մոռանայ, որ թիւրքական լծից իր ազատումը պարտական է Մեծն Բրիտանիային, ուստի նա միև-յն օրինապահութեամբ և միևնոյն նկատառումներով պէտք է նայէ այն տնտեսական առաւելութիւններին, ինչպէս կառավարութեան և օրէնքների փոփոխութեան վրայ։

ԴԻՆԻ

---

# ԳԱՒԱՌ

*Ախալցխա*

Վարչութիւնս սրանով յայտնում է յարգելի Խորհրդին ի գիտութիւն, որ ճիւղիս անդամների ապրիլի 16-ին և 23-ին կայացած ընդհանուր ժողովներում քննուեց և հաստատուեց անփոփոխ 1916 թուի ելև մուտքի հաշիւը։

Ռուսաստանի ներկայ ժողովրդական իրաւունքների ազատութեան առթիւ, ճիւղիս Վարչութիւնը ամբողջ կազմով հրաժարուել էր և առաջարկել ընդհանուր ժողովին նոր ընտրութիւն կատարել։ Յիշեալ ժողովում գաղտնի քուէարկութեամբ Վարչութեան անդամներ վերընտրուեցին՝ Խ. Թէխմիշճեանը և Լ. Հէպիպեանը, ընտրուեցին օր. Մարիամ Ծարակեան, Շուշանիկ Ագնաւուրեան և Գ. Մ. Խաչախորդեան։ Փոխանդամներ ընտրուեցին տիկ. Զապէլ Հայրապետեան և Գ. Ս. Ստեփանեան։

Ընդհանուր ժողովը ընտրեց աղքատախնամ մի մասնախումբ, որ բացի կարօտեալներին օգնութիւն հասցնելուց, պիտի զբաղուի պատերազմից վնասուածներին և փախստականներին օգնութեան գործով, որովհետև այդ առթիւ ընտրուած տեղական Հայկական Կոմիտէտը այժմ դադարել է գործելուց։ Այսուհետև յիշեալ մասնախումբը կոչուելու է «Կ. Հ. Բ. Ընկ. Ախալցխայի ճիւղի պատերազմից վնասուածներին և կարօտեալներին օգնող Մասնախումբ»։

Վարչութեան առաջադրութեամբ ընդհանուր ժողովը որոշեց հետևեալը. Ի նկատի ունենալով որ ճիւղիս գործերը հետզհետէ բարդանում են և ընդարձակւում, ուստի ունենալ ճիւղի վարձովի գործավար, թէ ճիւղի գրագրութիւնները կատարելու և թէ ճիւղի գործերը և որոշումները ի կատար ածելու։

Ժողովը ընտրեց մի յանձնաժողով Ընկերութեանս կանոնադրութիւնը վերամշակելու և ներկայ պայմանների համապատասխան յօդուածներ մտցնելու և դուրս հանելու, ճիւղերի իրաւունքները ընդարձակելու, ընտրութիւնների խնդիրը կանոնաւորելու, նպատակը ընդարձակելու եայլն, որը տեղական ընդհանուր ժողովից հաւանութիւն ստանալուց յետոյ, կուղարկուի Խորհուրդին, ընկերութեան կենտրոնական ժողովի խնդրի առարկայ դարձնելու համար։

Ժողովում որոշուեց ճիւղի գրադարանին կից բաց անել ընթերցարան, կազմակերպել քաղաքիս կիսագրագէտ և անգրագէտ դասակարգերի համար երեկոյեան և կիրակնօրեայ դասընթացքներ և դասախօսութիւններ, որ նախկին ռեժիմի օրով անհնար եղաւ գլուխ բերել։

Որոշուեց տալ յաճախ ներկայացումներ թէ ճիւղիս եկամուտներն շատացնելու և թէ դրանով ժողովրդի գեղարուեստական ճաշակը զարգացնելու։

Որոշուեց բաց անել ճիւղի օսլա-լուացարարային արհեստանոց ևայլն։

Ճիւղիս նորընտիր վարչութիւնը իւր ապրիլի 28-ի կայացած առաջին նիստում նախագահ ընտրեց Թէխմիչճեանին, իսկ քարտուղար-գանձապահ՝ Լ. Հէպեպեանին։

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

## ԽՈՐՀՈՒՐԴ

Կ. Հ. Բ. Ընկ.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Հ. առ. քահ. Տէր Յովհաննիսեանի միջոցով պ. Բ. Քորողլեանից յօգուտ որբանոցի 25 ր.։

—պ. Լ. Փրիդոնեանից 1916/17 ուս. տար. դպրոցական նպաստ 300 ռ.։

— պ. Լ. Նիկոլայևիչ և տիկին Մարիամ Յովսէփեան Փրիդոնեաններից 200 ռ. մշտական անդամութեան համար։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ

Մայիսի 18-ին կայացաւ Հ. Կ. Կոմիտէի հերթական նիստը, նախագահութեամբ Ս. Յարութիւնեանի, ուր եղան հետևեալ զեկուցումներն ու որոշումները.

ա) Պ. Նախագահը զեկուց Մանչեստրից ստացուած պ. Մանուշակեանի հեռագիրը, որով յայտնում է որ Հայասէրների Կուսակցութեան կողմից փոխադրուած է 5000 ռ. Կոմիտէի կարիքների համար։ Որոշուեց յայտնել շնորհակալութիւն։

բ) Բաղդադից ստացուած հեռագիրը, որով յայտնում են, որ ներկայիս քաղաքում կան շուրջ 250 որբ, որոնումները դեռ շարունակւում են, անհրաժեշտ է օգնութիւն։

Այս հեռագրի պատճէնն որոշուեց ուղարկել Պետրոգրադ պ. Ղուկասեանցին, միևնոյն ժամանակ հեռագրով նորից տեղեկութիւններ քաղել Բաղդադի փախստականների դրութեան մասին։

գ) Հ. Կ. Կոմիտէն շնորհակալութեամբ ստացաւ Աւան Իւզբաշեանից 600 ռ. իւր որդու՝ Գուրգէն Իւզբաշեանցի յիշատակին յօգուտ Կոմիտէի տեղւոյս որբանոցների։

դ) Պ. Նախագահը առաջարկեց ի նկատի առնելով այն հանգամանքը, որ Ցարսկիէ-Սելոյում բժիշկ չկայ, մինչդեռ նրա կարիքը որբանոցների համար շատ մեծ է, որոշուեց տաճկահայ բժիշկ պ. Մանուշակեանին հրաւիրել այդ պաշտօնին և կազմակերպել մի հիւանդանոց-որբանոց։

Տրապիզոնից պ. Առաքելեանը հեռագրում է որ Տրապիզոնի որբանոցից 30 որբ փոխադրուած է Բաթում Կոմիտէիս որբանոցը։

## ՃԻՒՂԵՐ

Ախալցխայի ճիւղի վարչութիւնը խնդրել է Խորհրդից տալ մշտական անդամութեան մրցագիրներ՝ տ. Հռիփսիմէ Մարտիրոսեան Ղազարեանին և նրա որդի Մանուկ Մանուկեան Ղազարեանին, որոնք վճարել են սահմանած 100-ակա. ռուբլին։ Խորհուրդը որոշեց տալ նրանց պատշաճ մրցագիրներ։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏ. ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Մայիսի 16—25-ը ալիւր ուղարկուած է Ղարաքիլիսա 2 վ., Իգդիր՝ 4, Վաղարշապատ՝ 5, Ղամարլու՝ 3, Ալէքսանդրապոլ՝ 4, Աշտարակ՝ 3, Ղուրդուղուլի՝ 3, Սարիղամիշ՝ 8 և Ղարս՝ 3, ընդամենը 36 վ.։

Բրինձ ուղարկուած է Ղարաքիլիսա 465 պ.։

Սապոն ուղարկուած է Ղարաքիլիսա 80 պ., Գանձակ՝ 80, Ղարաչինար՝ 40 և Անեննո՝ 40, ընդամենը 240 պ.։

Շաքար ուղարկուած է Գանձակ՝ 200 պ., Անեննո և Ղարաչինար՝ 40-ական պ., ընդամենը 280 պ.։

Գարի ուղարկուած է Իգդիր 1 վ.։

## ՀԵՌԱԳՐԵՐ

Թաւրիզ—Օհանջանեանից.—Վան ուղարկեցի 6000 պ. ցորեն և նաւով 3000. ճանապարհին կայ 9000 պ., Դանալուում և Մարաղայի շրջանում 12,000 պ.։

Ստաւրոպոլ—Լիազօր Ներովիդովից.—Ապրիլ ամսուայ նորմայի կատարումը դադարեցուած է։ Մայիս ամսուայ նորման կարգադրուած է կատարել մեր նահանգի պաշարից։ Որոշուած է տալ Գանձակի գաղթականութեան կարիքների համար 8 վ., Երեւանի նահանգի՝ 95 վ.։

Ալէքսանդրապոլ—Տէր-Գրիգորեանից.—Պահեստում տեղ չը կայ. բացի ալիւրից, սապոնից և շաքարից, ուրիշ ոչինչ, առանց իմ պահանջի, չուղարկէք։

Եկատերինոդար—Մելքոնեանից.— Կարգադրութիւն է արուած պատրաստել 60 վ. ալիւր, որից 6 վ. Սարիղամիշ, իսկ 54-ը Թիֆլիս պիտի ղրկուի։

Երեւան—Խորէն եպիսկոպոսից.— Խնդրում եմ հեռագրով կարգադրեք Երեւանի ձեր պահեստին՝ բաց թողնել որբանոցի կարիքների համար ալիւր։ Այս հեռագրին պատասխանուած է.— Հեռագրով կարգադրութիւն է արուած Երեւանի պահեստի կառավարչին ձեզ տալու 300 պ. թեփ-ալիւր և 200 պ. սպիտակ ալիւր։

# Քրօնիկոն

Սոյն համարի հետ ուղարկւում է տեղական բաժանորդներին Կ. Հ. Բ. Ը-թեան Կենտրոնի 1916 թուի հաշիւը։

Կենտրոնական կառավարութեան մայիսի 13-ի կարգադրութեամբ Անդրկովկասեան առանձին կոմիտէի անդամ է նշանակուած 3-րդ և 4-րդ Պետ. Դումայի անդամ Գ. Վ. Գուրոպը (կադէտ), որն արդէն եկել է Թիֆլիս։

—Հայ ուսուցչական համագումարն ընտրեց 20 հոգուց բաղկացած մի խորհուրդ, որ կոչուելու է «Հայ Ուսուցչական Համագումարի Կենտրոնական Խորհուրդ»։ Դպրոցական խորհուրդը կազմուած լինելով միջնակարգ, պետական, ծխական և գաւառական դպրոցների ներկայացուցիչներից, դրան է վերապահւում վարելու այն բոլոր գործերը, որոնք վերաբերելու են դպրոցների ազգայնացման, ուսուցչի իրաւական և նիւթական վիճակի, ընդհանուր ուսուցչական միութիւն կազմելու և այլ դպրոցական խնդիրների շուրջ։

—Քաղաքային ընտրութիւնների առիթով միօրեայ մարդա-

համար կազմակերպելու համար քաղաքը բաժանուած է 200 շըրջանների։ Ընտրութիւնների կազմակերպման նախնական ծախսերի համար յատկացուած է 50,000 ռ.։

—Անցեալ կիրակի Երևանեան հրապարակում կայացաւ մի մեծ միտինգ Աւստրիայի սոցիալ-դեմոկրատ Ֆ. Ադլերի մահապատժի առիթով։ Արտասանուեցին մի շարք ճառեր հոծ բազմութեան ներկայութեամբ։ Ցոյցը շարունակուեց մի քանի ժամ։

—Անդրկով. առանձին կոմիտէին կից խորհրդակցութիւնը որոշել է, որ հաշտարար դատաւորները պէտք է լինեն ընտրովի և գործերը պէտք է վարեն դեմոկրատիկ ոգով։

—Անդրկով. առանձին կոմիտէն առաջարկել է Ա. Ջիվելեգեանին յանձն առնել Երևանի նահանգի ընդհանուր կոմիսարի պաշտօնը, իսկ չընդունելու դէպքում առաջարկել այն՝ պրոֆ. Ա. Ներսիսեանին։

—Հայկազեան ընկերութեան առաջին հիմնադիր ժողովը կայանալու է մայիսի 31-ին Թիֆլիսում։

—Կովկասեան բանակի զինուորական համագումարը վերջացաւ ամսիս 27-ին մի ամբողջ ամսուայ զբաղմունքներից յետոյ։ Համագումարն ընտրեց կենտրոնական մի մարմին բաղկացած 150 հոգուց։

—Թիֆլիսի բանուոր. և զինուոր. պատուիրակների խորհուրդները միացել են և կազմել զինուոր. և բանուոր. պատգամ. խորհուրդ։ Երկու գործադիր մարմինները ձուլուել են և դարձել մի գործադիր մարմին։

—Թիֆլիսի քաղաքային վարչութեան անդամ պ. Մ. Աթաբէգեանը բողոքեց այն հանգամանքի դէմ, որ քաղաքային իրաւասուների ընտրութեան գործը, հակառակ նոր օրէնքի, իրեն ձեռքն է առել Թիֆլիսի քաղաքական գործադիր մարմինը։ Դուման միաձայն, մասնակցութեամբ ծայրայեղ ուղղութեան իրաւասուների, որոշեց խնդրել պ. Աթաբէգեանին յետ վերցնել իր հրաժարականը, բայց նա անխախտ մնաց իր որոշման մէջ։ Դուման և քաղաքային ծառայողները, յայտնելով ցաւակցութիւն, բուռն կերպով յայտնեցին պ. Աթաբէգեանին իրենց անկեղծ յարգանքը։

—Մայիսի 24-ին Տիկ. Զապէլ Եսայեանի, պ. Վրթանէս Փափազեանի և այլոց մասնակցութեամբ «Համբաւաբեր» Թերթի խմբագրատան տեղի ունեցաւ մի խորհրդակցութիւն։ Յանձնաժողովի կողմից կարդացուեց ծրագիրը, որ նիւթ դարձաւ Թեր ու դէմ խօսակցութիւնների։

Բոլորի կողմից ջերմօրէն ընդունուեց արևմտահայ հին ու նոր գրողների մի միութիւն ունենալու գաղափարը, որի նպատակը պիտի լինի կապ հաստատել արևմտահայ գրագէտների միջև, քաջալերել ու առաջ քաշել երիտասարդ ու շնորհալի ուժերը և զարկ տալ արևմտահայ լեզուին ու գրականութեան։

Բոլորը հաւանութեամբ որոշուեց կազմուելիք միութիւնը անուանել «Արևմտահայ Գրագէտների Միութիւն», և անմիջապէս ձեռնարկել գործի։

Ընտրուեց 9 հոգուց բաղկացած առժամեայ մի վարչութիւն, որի անդամներն են՝ Տիկ. Զապէլ Եսայեան և պ. պ. Վրթ. Փափազեան, նկարիչ՝ Արշ. Ֆէթվաճեան, Վ. Թոթովենց, Լ. Թիւթիւնճեան, Զարդարեան, Վ. Պապիկեան, Յ. Պարսամեան։

# Համաշխարհային պատերազմը

Ռուսաց արեւմտեան ճակատում շաբաթուայ ընթացքում կարևոր փոփոխութիւններ չի պատահել։ Պոտաշնիա շրջանում հակառակորդի յարձակումները ապարդիւն անցան։

Կովկասեան ճակատում՝ Ակ-Բաբա լերան շրջանում, Երզնկայից հարաւ քիւրդերի յարձակման փորձերն յետ մղուեցին։ Ռուսները գրաւեցին Քիրման-Շահից հիւսիս-արևմուտք Ռաւանսերը։ Քիւրդերը նահանջեցին դէպի Ջեանրուդ։

Ֆրանս-անգլիական ճակատում՝ Վոկլեր և Կալիֆորնիա սարահարթերում գերմանացիք 5 անգամ յարձակուեցին, բայց ամեն անգամ մեծամեծ կորուստներով յետ շպրտուեցին ֆրանսիացիների կողմից։ Շամպանիայում ֆրանսացիները յանկարծական յարձակում գործեցին Նետոնի լեռներից արևելք և գերիներ վերցրին։

Անգլիական ճակատի վրայ, Սուշէ գետից հարաւ կատաղի կռիւ է տեղի ունենում։ Անգլիացիները յետ խլեցին մայիսի 20-ին Շերեզիից հարաւ թշնամու գրաւած դիրքը։

Իտալական ճակատում՝ մայիսի 1-ից մինչև 16-ը Ալպերի զօրաճակատի վրայ իտալացիները վերցրել են 23,681 գերի, 36 թնդանօթ, 148 գնդացիր, 27 խրամատային մորտիր և մեծ քանակութեամբ ռազմամթերք։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ



Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1

